Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 16 ՕԳՈՍՏՈՍ 1956

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։*





# ԶՐՈՒՅՑ ՊԱՐՏԻԱՅԻ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՄԱՆ ՄԱՍԻՆ

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը պարտիայի և սովետական ժողովրդի առջև մարտական խնդիր դրեց՝ վեցերորդ հնգամյակում բուռն թափով ընդլայնել սոցիալիստական հասարակարգի նյութա-արտադրական բազան, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում արմատավորել առաջավոր տեխնիկան, գիտության ու տեխնիկայի նվաճումները։ Պարտիայի XX համագումարը որոշեց այսուհետև ևս ապահովել ծանր ինդուստրիայի զարգացման արագ տեմպերը, ընդլայնել ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը, առաջ մղել թեթև և սննդի արդյունաբերության զարգացումը։*

*Պարտիան առանձնակի ուշադրություն դարձրեց գյուղատնտեսության զարգացման հարցի վրա, դիրեկտիվ տալով վեցերորդ հնգամյակի վերջում հացահատիկի արտադրությունը հասցնել 11 միլիարդ փթի, դրա հետ միաժամանակ մեծ չափերով ավելացնել կա-*

թի, մսի, ինչպես նաև բամբակի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի և բանջարեղենի արտադրությունը։ Երկրի ժողովրդական տնտեսության այսպիսի բուռն վերելքի, արդյունաբերության և գյուղատնտեսության հարաճուն զարգացման հիմնական նպատակն է, անդուլ կերպով բարձրացնել աշխատավոր մասսաների նյութական բարեկեցությունն ու կուլտուր-կենցաղային մակարդակը։

Սովետական ժողովուրդը ոգեշնչված պարտիայի XX համագումարի որոշումներով, հերոսական աշխատանք է կատարում անշեղորեն կենսագործելու համագումարի դիրեկտիվները, ժամկետից շուտ ավարտելու վեցերորդ հնգամյա պլանի առաջադրանքները։

Պարտիայի գլխավորությամբ սովետական ժողովրդի անձնվեր պայքարի վառ օրինակ են հանդիսանում ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956 թվականի առաջին կիսամյակի պետական պլանի կատարման արդյունքները, որոնց մասին վերջերս հրապարակվել է ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը։

Այսպես, օրինակ, 1956 թվականի առաջին կիսամյակում, 1955 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ արդյունաբե-



րության արտադրանքի հիմնական տեսակների պլանները կատարվել են հետևյալ ցուցանիշներով. չուգուն՝ 109 տոկոսով, պողպատ՝ 108 տոկոսով, քարածուխ՝ 110 տոկոսով, հանքային պարարտանյութեր՝ 115 տոկոսով, մետաղահատ հաստոցներ՝ 106 տոկոսով, ավտոմոբիլներ՝ 105 տոկոսով, տրակտորներ՝ 107 տոկոսով, տրակտորային գութաններ՝ 132 տոկոսով, տրակտորային շարքացաններ՝ 130 տոկոսով, հացահատիկային կոմբայններ՝ 123 տոկոսով, եգիպտացորենի և սիլոսային կուլտուրաների բերքահավաքի կոմբայններ՝ 313 տոկոսով, ցեմենտ՝ 107 տոկոսով, բրդե գործվածքներ՝ 109 տոկոսով, մետաքսե գործվածքներ՝ 151 տոկոսով, տնային սառցարաններ՝ 148 տոկոսով, տնային լվացքի մեքենաներ՝ 187 տոկոսով, պահածոներ՝ 125 տոկոսով, օճառ՝ 120 տոկոսով։

1956 թվականին Սովետական Միությունում գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների ցանքատարածությունները կազմեցին ավելի քան 194 միլիոն հեկտար։ Չնայած այն հանգամանքին, որ ընթացիկ տարում գարունը ուշ բացվեց, այնուամենայնիվ գարնանացանի պլանը հաջողությամբ կատարվեց և գերակատարվեց։ 1955 թվականի համեմատությամբ, այս տարի գարնանացան ցորե-

նի ցանքատարածությունների ավելացան 7 միլիոն հեկտարով, եգիպտացորենինը՝ 6 միլիոն հեկտարով, երկարաթել վուշինը՝ ավելի քան 400 հազար հեկտարով, շաքարի ճակընդեղինը՝ 260 հազար հեկտարով, արևածաղկինը՝ ավելի քան 300 հազար հեկտարով։ Նշանակալից չափով ավելացել են նաև կարտոֆիլի և բանջարեղենի ցանքատարածությունները։

Ընթացիկ տարում եգիպտացորենի, արևածաղկի և կարտոֆիլի ցանքը մեծ մասամբ կատարվել է քառակուսի-բնային եղանակով, որը հնարավորություն է տալիս զգալի չափով բարձրացնել բերքատվությունը։

Հաղթահարելով ընթացիկ տարվա դժվարությունները և կենսագործելով XX համագումարի որոշումները, կոլտնտեսությունները լուրջ հաջողություններ են ձեռք բերել անասունների ինչպես գլխաքանակի ավելացման, այնպես էլ կովերի կաթնատվության բարձրացման ուղղությամբ։ Հուլիսի 1-ի տվյալներով 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, կոլտնտեսություններում կովերի գլխաքանակն ավելացել է 104 տոկոսով, խոզերինը՝ 121 տոկոսով, ոչխարներինը՝ 101 տոկոսով։ Նույնպիսի հաջողություններ են



ձեռք բերել նաև անասնապահական սովխոզները։

Անասնաբուծության մթերքների արտադրության աճը հնարավորություն տվեց ավելացնել այդ մթերքների պետական մթերումներն ու գնումները։ Կաթի մթերումների և գնումների կիսամյա պլանը կատարվեց 120 տոկոսով։ Կոլտնտեսությունները պետությանը հանձնեցին ու վաճառեցին 52 տոկոսով և սովխոզները՝ 19 տոկոսով ավելի կաթ, քան 1955 թվականի նույն ժամանակաշրջանում։

Գյուղատնտեսությունը, ինչպես ասացինք, գտնվում է մեր պարտիայի և կառավարության ամենօրյա ուշադրության կենտրոնում, հետևապես գյուղատնտեսությունը առաջնակարգ, բարձր արտադրողականություն ունեցող տեխնիկայով զինելը դարձել է Սովետական պետության հիմնական խնդիրներից մեկը։

1956 թվականի առաջին կիսամյակում սոցիալիստական գյուղատնտեսությունը պետությունից ստացել է 118 հազար տրակտոր, այդ թվում 50 հազար հերկի տրակտոր, 62 հազար բեռնատար ավտոմոբիլ, 28 հազար հացահատիկային կոմբայն, 90 հազար հավաքիչ՝ հացահատիկային կուլտուրաների անջատ բերքահավաքի համար, 5 հազար կար-

տոֆիլահավաք կոմբայն, եգիպտացորենի և սիլոսային կուլտուրաների հավաքման 10 հազար կոմբայն, շաքարի ճակնդեղի հավաքման 4 հազար կոմբայն, 64 հազար տրակտորային գութան, 78 հազար տրակտորային շարքացան և գյուղատնտեսական բազմաթիվ այլ մեքենաներ ու սարքեր։

Պարտիայի XX համագումարը դիրեկտիվներ տվեց երկրում լայնորեն ծավալել ապրանքաշրջանառությունը։ Ի կատարումն այդ դիրեկտիվների, 1956 թվականի առաջին կիսամյակում զգալիորեն աճել է պետական և կոոպերատիվ մանրածախ ապրանքների առևտուրը։ Պարենային կարևորագույն ապրանքների վաճառքը 1955 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ ավելացել է. մսինը և մսամթերքներինը՝ 7 տոկոսով, կենդանական յուղինը՝ 3 տոկոսով, ձեթինը՝ 19 տոկոսով, կաթինը և կաթնամթերքինը՝ 59 տոկոսով, շաքարինը՝ 19 տոկոսով և այլն։ Դրան զուգընթաց ավելացել է նաև արդյունաբերական ապրանքների վաճառքը, օրինակ, բրդե կտորներինը՝ 25 տոկոսով, մետաքսե կտորներինը՝ 16 տոկոսով, տնային սառցարաններինը՝ 60 տոկոսով, կաշվե կոշկեղենինը՝ 6 տոկոսով, կահույքինը՝ 11 տոկոսով։



Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը առանձնահատուկ ուշադրություն են դարձնում մեր ժողովրդի կյանքի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացման հարցի վրա։ Դրա լավագույն ապացույցն է հանդիսանում այն, որ միայն 1956 թվականի առաջին կիսամյակում պետական ձեռնարկությունները, հիմնարկությունները և տեղական Սովետները կառուցել և շահագործման են հանձնել 6,7 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, կամ 700 հազար քառ. մետրով ավելի, քան 1955 թվականի առաջին կիսամյակում։ Բացի դրանից, զգալի քանակությամբ անհատական բնակարաններ են կառուցել նաև բանվոր-ծառայողները և կոլտնտեսային աշխատավորությունը։

Քաղաքներում և գյուղական վայրերում ընդլայնվել է միջնակարգ դպրոցների ցանցը։ Ընթացիկ տարում երկրի բոլոր միջնակարգ դպրոցները ավարտեցին և հասունության ատեստատներ ստացան ավելի քան 1 միլիոն 400 հազար մարդ, կամ 17 տոկոսով ավելի, քան անցյալ տարի։ Անցյալ տարվա համեմատությամբ այս տարի մեր բարձրագույն ուսումնական հաստատությունները և

տեխնիկումները 120 հազար մարդով ավելի շրջանավարտներ է տվել:

1956 թվականին պետության հաշվին սովետական միլիոնավոր երեխաներ են հանգստանում պիոներական ճամբարներում, մանկական հրապարակներում, տուրիստական բազաներում և հանգստյան տներում: Այս տարի կառավարության որոշմամբ վեց ժամյա աշխատանքային օր սահմանվեց դեռահասների համար: Միլիոնավոր աշխատավորներ արտոնյալ գներով ուղեգրեր են ձեռք բերել երկրի առողջարաններում հանգստանալու և բուժվելու համար:

Պարտիայի անմիջական ղեկավարությամբ սովետական ժողովուրդն անձնվեր աշխատանք է կատարում պարտիայի XX համագումարի պատմական որոշումներն անշեղորեն կենսագործելու, վեցերորդ հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու և Սոցիալիստական Հայրենիքի տնտեսական հզորությունն է՛լ ավելի ամրապնդելու համար:

---

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԹՇՆԱՄԻՆԵՐԻ ՄԵՔԵՆԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԴԱՏԱՊԱՐՏՎԱԾ ԵՆ ՁԱԽՈՂՄԱՆ

## Վ. ԲՈՐՈՎՍԿԻ

*Սովետական Միության նախաձեռնությամբ և նրա ակտիվ մասնակցությամբ վերջին տարիներում ձեռք է բերված միջազգային հարաբերությունների լարվածության թուլացում: Վերացվել են պատերազմի վտանգավոր օջախները Արևելքում, կարգավորվել են Սովետական Միության հարաբերությունները Եվրոպայի և Ասիայի մի շարք պետությունների հետ, կարևոր քայլեր են արված միջազգային կոնտակտների ընդլայնման ուղղությամբ: Պետությունների միջև կապերի ընդարձակման և ամրապնդման գործում առանձնապես մեծ դեր խաղացին մի քանի երկրների պետական գործիչների անձնական կոնտակտները:*

*Սովետական Միությունը անդուլ կերպով պայքարում է հանուն սպառազինությունների մրցավազքի դադարեցման, վճռականապես ձգտում է հասնել սպառազինությունների և զինված ուժերի կրճատման ու միջուկային զենքի արգելման մասին միջազգային համաձայնագրերի կնքման: Նկատի ունենալով արևմտյան*

տերությունների համար դիմադրությունը այդպիսի համաձայնագրերի կնքման գործում, Սովետական կառավարությունը ձեռնարկեց միակողմանի քայլերի, որպեսզի մեռյալ կետից առաջ մղի զինաթափման գործը։ Երկու տարվա ընթացքում ՍՍՌՄ Զինված Ուժերը կըրճատվեցին մոտ 2 միլիոն մարդով՝ սպառազինությունների և ռազմական ծախսերի համապատասխան կըրճատումով։

ՍՍՌՄ Գերագույն Սովետը հինգերորդ սեսիայում ընդունած իր դիմումով բոլոր երկրների պառլամենտներին կոչ արեց՝ քննարկել ու պաշտպանել Սովետական Միության այդ նախաձեռնությունը և դրա հետ միասին գործնական միջոցներ ձեռնարկել սպառազինությունների մրցավազքը դադարեցնելու, զինված ուժերը և սպառազինությունները կրճատելու ուղղությամբ։ Գերագույն Սովետը նմանապես հայտարարեց, որ Սովետական Միությունը կշարունակի պայքարը ատոմային զենքի լրիվին արգելման և ջերմամիջուկային զենքի փորձարկումների անհապաղ դադարեցման համար, որպես այդ ուղղությամբ կատարած առաջին քայլի։

Այժմ, երբ Սովետական Միությունը և մյուս սոցիալիստական երկրները անում են ամեն հնարավոր բան միջազգային լարվածությունը թուլացնելու համար, իմպերիալիստական ռեակցիոն ուժերը ջանում են ակտիվացնել ժողովուրդների կողմից դատապարտված «սառը պատերազմը»։



«Սառը պատերազմին» օժանդակելու միջոցներից մեկը այն խոշոր հատկացումներն են, որ կատարվում են ամերիկյան կառավարող շրջանների կողմից ՍՍՌՄ-ի և ժողովրդա-դեմոկրատական երկրների դեմ քայքայիչ գործունեություն կազմակերպելու համար։ 1951 թվականին ԱՄՆ-ի կոնգրեսը այդ նպատակի համար պաշտոնապես հատկացրել է 100 միլիոն դոլար. վերջերս ԱՄՆ-ի սենատը որոշում է ընդունել այդ հատկացումները ևս 25 միլիոն դոլարով ավելացնելու մասին։ Դրա հետ մեկտեղ, «սառը պատերազմ» մղելու համար ԱՄՆ-ը ծախսում է միլիոնավոր դոլարներ, որոնք բաց են թողնվում ոչ պաշտոնական կերպով։

Թե ինչի՞ վրա են ծախսվում այդ միջոցները, կարելի է դատել արտասահմանյան, այդ թվում նաև հենց ամերիկյան, մամուլի մի շարք հաղորդագրություններից։ Առանձնապես, «Նյու-Յորք հերալդ տրիբյուն» թերթը բացահայտ կերպով խոստովանում է, որ Միացյալ Նահանգներում պատասխանատու շրջանները «մասսայական քայքայիչ գործողություններ» են կիրառում Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ։ Ամերիկյան մյուս՝ «Դեյլի նյուս» թերթը բացահայտորեն կոչ է անում ուժեղացնել լրտեսների և դիվերսանտների ուղարկումը դեպի սոցիալիստական երկրները։ Թերթը պահանջում է, որ ԱՄՆ-ի պետական քարտուղարի եղբայր Ալլեն Դալլեսի ղեկավարած ամերիկյան հետախուզությունը «ինչպես պաշտոնական, այնպես էլ ոչ-պաշտոնական այցելուների

թվում Ռուսաստան ուղարկի համապատասխան թվով
լրտեսներ»։ Այդ գործակալների խնդիրն է, բացա-
տրում է թերթը, «հրահրել հակակոմունիստական ընդ-
հատակյա շարժում, կոնտակտներ հաստատել ամերիկ-
յան լրտեսների հետ», որոնք այժմ գործում են դեմո-
կրատական երկրներում։
Վերջին ամիսներում ժողովրդական դեմոկրատիա-
յի երկրներում մերկացվել և վնասազերծ են արվել
իմպերիալիստական հետախուզությունների մի ամբողջ
շարք գործակալներ, որոնց խնդիրն էր դիվերսիաների
և պրովոկացիաների իրականացումը։ Օրինակ, Լեհաս-
տանում տեղի ունեցան ամերիկյան լրտեսների մի քանի
դատավարություններ։ Ինչպես հաստատված է, այդ
գործակալությունը ղեկավարում էին ամերիկյան լըր-
տեսական կենտրոնները Արևմտյան Գերմանիայում։
Գերմանական մամուլը հաղորդում էր, որ դեռևս
այս տարվա սկզբին գործակալական կենտրոնների
տեսչական նպատակով Արևմտյան Բեռլին այցելեց
ԱՄՆ-ի պետական քարտուղարի քույրը՝ Էլեոնորա Դալ-
լեսը, որը հանդիսանում է ԱՄՆ-ի պետական դեպար-
տամենտին ենթարկվող ամերիկյան լրտեսական ծառա-
յություններից մեկի «մասնագետը»։ Այդ կապակցու-
թյամբ արևմտա-գերմանական «Դեր շպիգել» ամսա-
գիրը գրում էր, որ ԱՄՆ-ը մտադիր է Արևմտյան
Բեռլինից սկսել «նոր հարձակում հակառակորդի լա-
գերի վրա»։
Եվ ահա մի քանի ամիս անց ամերիկյան գործակա-



լության կողմից արյունոտ իրադարձություններ են կազմակերպվում լեհական Պոզնան քաղաքում։ Ինչպես վերջերս հաղորդեց ԳԴՌ-ի պետական անվտանգության մինիստրության ներկայացուցիչը, ամերիկյան գործակալների և լրտեսների մերկացված մի մեծ խմբի նյութերի ուսումնասիրությունը ցույց տվեց, որ նրանց գործունեությունը ուղղված է եղել ոչ միայն Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, այլև Լեհաստանի դեմ։ Ապացուցվել է հանցանքի վայրում բռնված հանցագործների ուղղակի կապվածությունը այն պրովոկացիաներին, որոնք կազմակերպվեցին Պոզնանում։ Այդ հանցագործները համագործակցելիս են եղել ԱՄՆ-ի հետախուզության հետ (նրանց թվում կային ինչպես գերմանացիներ, այնպես էլ լեհեր)։

Այս տարվա գարնանը Լեհաստանի պետական անվտանգության օրգաններին դիմեց ամերիկյան հետախուզության գործակալ Է. Գուրեցկին, որը հայտարարեց լրտեսական գործունեությունից իր կամավոր հրաժարվելու մասին։ Նա հաղորդեց, որ իրեն հատուկ նախապատրաստել են Արևմտյան Գերմանիայի տերիտորիայում գտնվող ամերիկյան հետախուզական կենտրոնում, որտեղից էլ նրան նետել են Լեհաստանի տերիտորիայի վրա, խնդիր ունենալով լրտեսական աշխատանք տանել Պոզնանում։ Արևմտյան Գերմանիայից հայրենիք՝ Չեխոսլովակիա վերադարձած ամերիկյան հետախուզության նախկին գործակալ Միրոսլավ Գոնդեկը պատմեց, որ «Պոզնանի արյունոտ պրովոկացիան

այդ վարձու գործակալների ձեռքի գործն է, որոնց գործունեության մասին ինձ լավ հայտնի էր»։

Ամերիկյան մի քանի թերթեր ուղղակի հայտարարում են, որ Պոզնանում տեղի ունեցած հակաժողովրդական ելույթների ծախսերը կատարվել են այն միջոցների հաշվին, որոնք հատկացվել են ԱՄՆ-ի կոնգրեսի կողմից քայքայիչ գործունեության համար։ «Սենատը որոշեց առանձնացնել... 25 միլիոն դոլար, գրում էր «Նյու-Յորք ջորնել-Ամերիկեն» թերթը,— այն կարգի գաղտնի գործունեություն ֆինանսավորելու համար, որը Պոզնանում անկարգություններ հասցրեց»։

Բոլորի հիշողության մեջ դեռևս թարմ է Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի տերիտորիայում ամերիկյան լրտեսական ծառայության հանցագործ գործողությունների մերկացումը, գործողություններ, որոնք հայտնի դարձան Բեռլինում ստորերկրյա անցք հայտնաբերելու կապակցությամբ։ Ստորերկրյա անցքը ամերիկացիների կողմից փորվել և մոտեցվել էր ԳԴՌ-ի և Սովետական Բանակի զորամասերի կապի գծերին հեռախոսային խոսակցությունները ունկնդրելու համար։ Ամերիկյան ռազմական իշխանությունների կողմից Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի տերիտորիայի անձեռնմխելիության այդ կոպիտ խախտումը Արևմտյան Գերմանիայում տեղավորված ամերիկյան լրտեսական կենտրոնների ամբողջ սիստեմի գործունեության բազմաթիվ արտահայտություններից միայն մեկն էր։



Վերջերս Չեխոսլովակիայի ներքին գործերի մինիստրության աշխատողները ԳԴՌ-ի անվտանգության օրգանների հետ միասին մերկացրին մի լրտեսական կազմակերպություն, որը ղեկավարվում էր Արևմտյան Բեռլինում գտնվող ամերիկյան հետախուզական կենտրոնի կողմից։ Այդ կազմակերպության անդամները զբաղվում էին պաշտպանական նշանակություն ունեցող չեխական արդյունաբերության և ռազմական օբյեկտների մասին ինֆորմացիա հավաքելով։ Վերջին ամիսներում Չեխոսլովակիայում ձերբակալվեցին ամերիկյան հետախուզության մի շարք գործակալներ։

Ամերիկյան հետախուզության մի խոշոր կենտրոն գտնվում է Ավստրիայում։ Ինչպես հաղորդում է «Էստերայխիշե Ֆոլկսշտիմմե» թերթը, Վիեննայում ապահովագրական ընկերության շենքում տեղավորված է «հետախուզական մի խոշոր ապարատ»։ Այստեղ, նշում էր թերթը, գտնվում են ժողովրդական դեմոկրատիայի երկրների մեծ քարտեզներ դրոշակներով, որոնք ամենայն հավանականությամբ, ծառայում էին որպես ԱՄՆ-ի լրտեսական ծառայության կապի կենտրոնների պայմանական նշաններ, լուսաազդանշանային ապարատներ, աերոֆոտոնկարների մեծացման և բազմացման ապարատներ և այլն։

Ավստրիական «Դեր աբենդ» թերթը գտնում էր, որ Զալցբուրգում կա այսպես կոչված «տեղափոխված անձանց» համար մի ճամբար՝ Գլազենբախը, որտեղ կենտրոնացված է ամերիկյան հետախուզության գոր-

ծակալությունը։ Արևմտյան Գերմանիայից, ասվում էր
թերթի հաղորդագրության մեջ, ճամբար են գալիս ա-
մերիկյան ռազմական մեքենաներ սուրհանդակներով։
Գործակալների խմբերը մեքենաներով հասցվում են
դեպի արևելք, այսինքն ժողովրդական դեմոկրատիայի
երկրների հետ ունեցած Ավստրիայի սահմանը։ Այդ
նույն ճամբարն են գալիս ուրիշ գործակալներ, որպես-
զի զեկուցեն կատարված առաջադրանքի մասին։ Ճամ-
բարում կան մեծ թվով քրեական տարրեր, որոնք մի
քանի ժամանակ է, ինչ համագործակցում են ամերիկ-
յան հետախուզական ծառայության հետ։

Զսահմանափակվելով սոցիալիստական երկրների
մասին գործակալական տվյալների հավաքումով, ամե-
րիկյան ռազմական օրգանները կանգ չեն առնում նը-
րանց սուվերենիտետի կոպիտ խախտման առաջ։ Վեր-
ջերս ԱՄՆ-ի ռազմական ինքնաթիռները հետախուզա-
կան նպատակներով բազմիցս ներթափանցել են
ՍՍՌՄ և Լեհաստանի օդային տարածությունները։ Սո-
վետական Միությունում, Չինական Ժողովրդական
Ռեսպուբլիկայում և Եվրոպական ժողովրդա-դեմոկրա-
տական երկրներում բռնվել են մեծ քանակությամբ օ-
դապարիկներ՝ ավտոմատ ապարատուրայով, որը նա-
խատեսված էր աերոֆոտոնկարահանումներ կատարե-
լու համար։ Ինչպես հաստատված է, նրանք բաց էին
թողնվում Արևմտյան Գերմանիայից, ինչպես նաև ա-
մերիկյան ռազմական բազաներից, որոնք տեղավոր-



ված են ՍՍՌՄ-ի հետ սահմանակցող մի քանի պետու-
թյունների տերիտորիայում՝ օրինակ, Թյուրքիայում։

Դեռ մինչև այժմ էլ ամերիկյան հետախուզությունը
ժողովրդական դեմոկրատիայի երկրների տերիտորիայի
վրա բաց է թողնում հարյուրավոր օդապարիկներ՝
զրպարտչական, թշնամական գրականությամբ։ Ահա թե
ինչ պատմեց այդ պրովոկացիոն գործողությունների
մասին չեխական քաղաքացուհի Դվորժակովան, որը
հայրենիք է վերադարձել արևմտա-գերմանական
Մյունխեն քաղաքից, որտեղ նա աշխատում էր «Ազատ
Եվրոպա» կեղծ ցուցանակի տակ քողարկված ամերիկ-
յան քայքայիչ կազմակերպության ռադիոկայանում։

«Օդապարիկների բաց թողնման կամպանիան, որն
իրականացվում է «Ազատ Եվրոպայի» կողմից, անմի-
ջականորեն ղեկավարում է ամերիկյան «Կրուսեյդ ֆոր
ֆրիդոմ» լրտեսական կազմակերպությունը։ «Դիրեկ-
տիվներ» այդ կամպանիայի համար Մյունխեն է ու-
ղարկում «Ազատ Եվրոպայի» գործերի գծով կոմիտեի
Նյու-Յորքի հատուկ բաժանմունքը...»։ «Բալոնային
կամպանիան» (այսինքն օդապարիկների բաց թողու-
մը» Խմբ.) Մյունխենում ղեկավարում էր և կարող է
պատահել, այժմ էլ ղեկավարում է ամերիկացի Սորոն-
սոնը։ Նա կանոնավոր կերպով հատուկ զեկույցներ էր
ուղարկում Վաշինգտոն, Ուիլյամ Գրոուֆորդին, Պետա-
կան դեպարտամենտ՝ Արևելյան Եվրոպայի գործերի

քաժին… Միստեր Սորոնսոնը հաճախ էր նշում, որ օդապարիկների բաց թողնման կամպանիայի համար առանձնացվում են զգալի միջոցներ»։

Սոցիալիզմի երկրների ժողովուրդները վճռական հակահարված են տալիս թշնամական ոտնձգություններին։ Անփառունակ կերպով ձախողվեց «իմպերիալիզմի գործակալների նողկալի պրովոկացիան Պոզնանում։ Սոցիալիստական երկրների դեմ ուղղված քայքայիչ գործողությունները այսուհետև ևս կձախողվեն։

Իմպերիալիստների ոչ մի մեքենայություն չի կարող խանգարել խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի գործի նոր հաղթանակներին։ Մեր թշնամիների ոչ մի չարանենգ հարձակում չի կարող կանգնեցնել մարդկության անհաղթահարելի շարժումը դեպի կոմունիզմ։

---

# ԿԱՌՈՒՑԵՆՔ ԱՄՈՒՐ, ԱՐԱԳ ԵՎ ԷԺԱՆ

Գ. ԿԱՆԵՅԱՆ

(Շինարար ինժեներ)

Շինարարությունը մեր երկրում գնալով ավելի լայն ծավալ է ընդունում։ Ամեն տարի կառուցվում են հազարավոր նոր բնակելի տներ, ակումբներ, դպրոցներ, թատրոններ և հասարակական արտադրական նշանակություն ունեցող բազմաթիվ այլ շենքեր։ Վեցերորդ հնգամյա պլանով նախատեսված է կառուցել 205 միլիոն քառակուսի մետր միայն բնակելի տարածություն։ Քաղաքացիական շինարարության այս վիթխարի ծավալը մեր շինարարներին պարտավորեցնում է խնայել շինարարական նյութերը, լայնորեն մեքենայացնել աշխատատար պրոցեսները։

Վերջին տարիներում մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և կառավարությունը ավելի են ուժեղացրել ուշադրությունը շինարարության նկատմամբ։ Այդ մասին են վկայում վերջերս կայացած շինարարների Համամիութենական խորհրդակցությունները, շի-

նարարության վերաբերյալ պարտիայի ու կառավարության մի շարք որոշումները։

Պարտիան շինարարներից պահանջում է բեկում մտցնել շինարարության մեջ, վերջ տալ շինարարական աշխատանքների նախկին պրիմիտիվ ձևերին, լայնորեն օգտագործել հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաները, որոնք առավելագույն չափով արագացնում և էժանացնում են շինարարությունը։

Ինչո՞ւ հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաների լայն կիրառումն արագացնում է շինարարությունը։

Հայտնի է, որ բոլոր տեսակի կոնստրուկցիաները, ինչպես փայտի, երկաթի, նույնպես և միաձույլ (մոնոլիտ) երկաթբետոնի, պահանջում են հսկայական օժանդակ աշխատանքներ և մեծաքանակ բանվորական ուժի վատնում։ Օրինակ, միաձույլ երկաթբետոնից միջհարկային ծածկեր պատրաստելու համար նախ հարկավոր է պատրաստել համատարած փայտամածներ և լաստեր՝ իրենց խիտ ու բարդ փայտյա կամ մետաղյա հենարաններով, ապա նրա վրա գործել արմատուրա։ Այնուհետև կատարում են բետոնացման աշխատանքները։

Թվում է, թե դրանից հետո միջհարկային



ծածկի աշխատանքները կարելի է ավարտած համարել։ Բայց ոչ։ Անհրաժեշտ է, որ գոնե 7 օր այդ ծածկի վրա ոչ մի դինամիկ հարվածներ չլինեն և չդրվի ոչ մի ծանրություն, որպեսզի թարմ, դեռ չամրացված բետոնի մեջ չառաջանան թեկուզ և աննշան ճաքեր։ Այդպիսի ճաքերն ընդունակ են բետոնի ամրացումից հետո էլ մնալ և պատճառ դառնալ կոնստրուկցիայի հետագա քայքայման։

Առաջին 4—7 օրերում հարկավոր է բետոնը օրական մի քանի անգամ ջրել (եթե այդ թույլ է տալիս եղանակը), 15—20 օր հետո միայն հնարավոր է փայտամածն ու լաստատախտակները քանդել և նույն տեղում այլ աշխատանքներ կատարել։

Ծեփային և հատակների աշխատանքները կարելի է սկսել միայն այն ժամանակ, երբ բետոնը լրիվ չոր է, իսկ հաստ կոնստրուկցիաների բետոնը այնքան էլ շուտ չի չորանում։ Բացի վերոհիշյալից, ինչպես տեսանք, շատ աշխատանքային պրոցեսներ շենքում ստիպված են կատարել ձեռքի ուժով, որն իր հերթին դանդաղեցնում է շինարարության ընթացքը։ Այդ բոլորի փոխարեն հավաքովի երկաթբետոնի կոնստրուկցիաները պատրաստի վիճակում դնում են պահանջված տեղը և շարունակում շինարարական մյուս աշխատանքները։

Այսպիսով հավաքովի երկաթբետոնային կոնստրուկցիաների կիրառումն անհամեմատ արագացնում է շինարարության ընթացքը, հնարավորություն է տալիս մեծ չափով մեքենայացնել աշխատատար պրոցեսները և լրիվին օգտագործել մեխանիզմները։

Շինարարության ժամկետների կրճատման շնորհիվ մեծ չափերով կրճատվում են նաև կատարվող ծախսերը։ Մոտավոր հաշվումները ցույց են տալիս, որ եթե շենքի կառուցման ժամկետը կրճատվում է 2 անգամ, ապա յուրաքանչյուր մեկ միլիոն ռուբլու արժողությամբ շինարարական-մոնտաժային աշխատանքներից ստացվում է 34 հազար ռուբլու խնայողություն։ Եթե այս թիվը բազմապատկենք մեր ռեսպուբլիկայում կառուցվող կապիտալ ներդրումների գումարով, կստացվի հսկայական մի գումար։ Որպեսզի շենքի կառուցումը էժան նստի, հարկավոր է անցնել տիպային նախագծերի կիրառման։ Դրա համար էլ 1957 թվականից արգելվելու են անհատական նախագծերով կառուցումները։ Անհատական նախագծերով կատարվող շինարարության մեջ թույլ էին տրվում հսկայական ավելորդություններ ու շռայլումներ, որոնք տարիներ շարունակ ուշադրության չէին արժանացել։ Դրա հետևանքով շռայլվել



են խոշոր պետական գումարներ՝ առանց օգուտ տալու ժողովրդական տնտեսությանը։

ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1955 թվականի նոյեմբերի 4-ի որոշումից հետո մեր ռեսպուբլիկայում վերանայվեցին կառուցվող բոլոր օբյեկտների նախագծերը և նրանց մեջ մտցվեցին անհրաժեշտ ուղղումներ։ Այդ միջոցառման շնորհիվ կառուցվող օբյեկտների վրա ավելորդ ծախսերը կրճատվեցին ավելի քան 45 միլիոն ռուբլով, միաժամանակ բարելավելով նրանց ներքին հարմարությունները։ Սա նշանակում է, որ միայն մեր ռեսպուբլիկայում մենք խնայեցինք այնքան գումար, որով կարելի է կառուցել լրացուցիչ մոտ 30.000 քառակուսի մետր բնակելի տարածություն։ Միության մասշտաբով այդ ազատված միջոցները կազմում են մոտ այնքան գումար, ինչքան ծախսվել է 1954 թվականի բնակելի շինարարության վրա։

ՍՄԿՊ XX համագումարում ընկ. Խրուշչևն ասաց. «Մենք չենք կարող թույլ տալ, որ միլիոնավոր ռուբլիներ ծախսվեն անիմաստ զարդարարության վրա, ի հաճույս որոշ ճարտարապետների վատ ճաշակի։ Մեր ճարտարապետների պատվի գործն է ստեղծել սոցիալիստական ճարտարապետական ոճ, որը պետք է իր մեջ մարմնավորի այն ամեն լա-

վացույնը, ինչ կուտակել է մարդկության ճարտարապետական միտքն անցյալում և դրա հետ մեկտեղ հենվել սովետական ճարտարապետության ամենաառաջավոր ստեղծագործությունների վրա։ Հարկավոր է, որ կառուցվող շենքերում առավելագույն հարմարություններ լինեն մարդու համար, որ շենքերը լինեն ամուր, խնայողական, գեղեցիկ»։

Շենքի կառուցման էժանացման համար մեծ նշանակություն ունի շինարարության որակը և գործածվող կոնստրուկցիաների ընտրությունը։ Մեկ խորանարդ մետր հավաքովի երկաթբետոնի կոնստրուկցիան արժե ավելի թանկ, քան նույն քանակությամբ միաձույլ բետոնը։ Այնուամենայնիվ հավաքովի երկաթբետոնով կատարված շինարարությունը նստում է ավելի էժան, քան միաձույլ բետոնով։ Պատճառն այն է, որ հավաքովի երկաթբետոնի կոնստրուկցիաները միշտ ստացվում են ավելի բարակ, քան նույնանման միաձույլ կոնստրուկցիաները։

Մեկ խորանարդ մետր հավաքովի երկաթբետոնի մեջ 20—30 տոկոսով ավելի քիչ երկաթե արմատուրա է ծախսվում, քան համաձույլ բետոնում։ Որքան կոնստրուկցիան թեթև է լինում, այնքան փոխադրականը կրճատվում է, կրճատվում է նաև ծավալը։ Թե-



թև կոնստրուկցիաները շատ հարմար են նաև կառուցվածքների ամրության համար, որը խիստ կարևոր է մեր ռեսպուբլիկայի պայմաններում և ընդհանրապես այնտեղ, ուր անհրաժեշտ է կիրառել հակաերկրաշարժային միջոցառումներ։

Փայտյա միջհարկային ծածկերի վերացնելը մեծ դեր է խաղում շենքն ավելի ամուր դարձնելու գործում։ Շինարարության ամրության համար մեծ նշանակություն ունի նաև օգտագործվող շինանյութերի որակը։

Շինարարության հաջողության նախնական պայմաններից մեկը՝ մեծ կարծրության և արագ ամրացվող ցեմենտների մասսայական կիրառումն է։ Սակայն, հակառակ դրան, 1955 թվականից սկսած Արարատի ցեմենտի գործարանը «400» մարկայի լավորակ ցեմենտի հետ, արտադրում է նաև «200» մարկայի ցեմենտ, որը բետոնային աշխատանքներում հիմնականում չի կարելի օգտագործել։

Վեցերորդ հնգամյակում շատ մեծ ու պատասխանատու խնդիրներ են դրված շինարարների առջև։ Դրանց հաջող և ժամանակին լուծումը շինարարներին պարտավորեցնում է արմատապես բարելավել շինարարական աշխատանքների որակը, մինչև՝ վերջ կատարել պարտիայի և կառավարության պահանջը, այն է՝ կառուցել արագ, էժան և ամուր։

---

# ՀԵՏԵՎԵՆՔ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻՆ

*Ա. ԻԲՐԱՀԻՄՈՎԱ*
Ստեփանավանի շրջանի Կալինինի գյուղի կոլտնտեսության կթվորուհի

*Վերջերս ինձ հաջողվեց լինել Մոսկվայում և դիտել Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը։ Ես եղա միութենական ռեսպուբլիկաների պավիլիոններում և տեսա շատ նորություններ։ Ինձ վրա լավ տպավորություններ թողեցին անասնապահական շենքերը, որտեղ արտակարգ մաքրություն և կարգ ու կանոն էր տիրում։ Մաքուր հագնված են անասնապահները։ Նրանց դժվար է ջոկել մասնագետ էքսկուրսավարներից։ Օրինակելի մաքուր վիճակում են պահվում անասունները։ Այս բոլորը բնական է։ Չէ՞ որ մենք, տասնյակ հազարավոր անասնապահներ ու միլիոնավոր այցելուներ գնում ենք Մոսկվա սովորելու։ Այսուհետև կաշխատենք նմանվել ցուցահանդեսի կթվորներին*



*և մեր գոմերում ստեղծել օրինակելի մաքրություն։*

*Ամենալավ բանը, որ ես տեսա ու հիացա, դա անասնաբուծության աշխատատար պրոցեսների մեքենայացումն էր։ Այնտեղ ամեն ինչ մեքենայով է կատարվում. ռելսերի վրայով շարժվում են վագոնիկները։ Նրանցով ներս են բերում կերը, դուրս է տարվում գոմաղբը։ Կովերին կթում են էլեկտրական սարքերով և կաթը տեղափոխում մեքենայական հարմարանքներով։*

*Այնտեղ կովերին շատ կեր են տալիս։ Ամեն մի կովին օրական տալիս են 80—100 և ավելի կգ. կեր։*

*Ցուցահանդեսում մենք տեսանք 8—10 հազար կգ. կաթ տվող կովեր։ Դրանք հիացմունք են պատճառում։*

*Ահա այն, ինչի մասին ես կցանկանայի պատմել։ Բայց մի՞թե պատմելը բավական է։ Մենք պարտավոր ենք մեր տեսածները կիրառել աշխատանքում և ես կուզենայի մի քանի խոսք ասել մեր կովերի մթերատվությունը բարձրացնելու հնարավորությունների մասին։*

*Ստեփանավանի շրջանը հայտնի է իր լավ արոտավայրերով ու խոտհարքներով։ Շատ և լավ արոտավայրեր ու խոտհարք-*

ներ ունի նաև մեր կոլտնտեսությունը։ Բայց մեր կովերը ձմռան-մսուրային շրջանում չեն ստանում այն բոլորը, ինչ պետք է կովի բարձր կաթնատվության համար։ Օրինակ, մեր ֆերմայում, մսուրային շրջանում կովերի կերաբաժինը կազմված էր 8—10 կգ. խոտից, 10—15 կգ. սիլոսից և 1—1,5 կգ. քուսպից։ Կովերին տալիս էինք նաև ծղոտ։ Անցյալ գարնանը, երբ ձմեռը երկարեց, կովերին տալիս էինք այդ կերերի կեսը։ Մսուրային շրջանում իմ խնամած Զայկա կովը օրական տալիս էր 18 կգ. կաթ, այն դեպքում, երբ նրան օրական տալիս էինք 30—40 կգ. կեր։ Դա չէր կշտացնում կովին, ես պարզ տեսնում էի, որ նա նորից ուտել է ուզում, սակայն ավելին տալ հնարավոր չէր, որովհետև կոլտնտեսությունը կերի շատ խիստ պակաս էր զգում։

Մեր խնդիրն է՝ օրինակ վերցնել ցուցահանդեսի մասնակիցներից և առաջին հերթին լուծել մսուրային շրջանում կովերին լիառատ կերերով ապահովելու հարցը։ Մեր կոլտնտեսության ղեկավարներն ասում են, որ այս տարի մենք կերերի առատության գործում կհասնենք երկրի առաջավորներին։ Իրոք առաջին քայլերն արված են։ Յուրաքանչյուր կովի համար արդեն պատրաստ-



ված է 6—7 տոննա սիլոս և դա նորից կավելանա ի հաշիվ եգիպտացորենի, որի ցանքերը մեզ մոտ հասնում են մոտ 200 հեկտարի։

Մեր կոլտնտեսությունում դժվարը ջրի հարցն է։ Գոմերում չկան ավտոմատ խմոցներ և ընդհանրապես ֆերմաները ջուր չունեն։ Դա շատ է իջեցնում անասունների կաթնատվությունը։ Ձմռանը ես և մյուս կթվորուհիները օրական երեք անգամ դույլերով ջուր ենք կրում և լցնում գոմում դրված ամանների մեջ և այդ միջոցով ապահովում անասունների խմելու ջուրը։

Մեզ մոտ արոտավայրերը շատ լավ են։ Սակայն փորձը ցույց է տալիս, որ արոտավայրերը արդյունավետ չեն օգտագործվում։ Առաջ մեզ մոտ նախրապահները անասուններին գիշերային արոտի չէին տանում։ Այժմ երեկոյան կթից հետո նախիրը արոտ է դուրս գալիս։ Գիշերը կովերը հանգստանում են մի քանի ժամ և նորից հանվում արոտի։ Ամենաշատ հանգիստը նրանց տրվում է օրվա շոգ ժամերին։ Եվ դա մեծ չափով նպաստում է կովերի կաթնատվության բարձրացմանը։

Ցուցահանդեսում պատմում էին, որ արոտային շրջանում կարևոր նշանակություն

ունի կովերին լրացուցիչ կանաչ կեր տալը: Այդ բանը մենք չենք փորձել ամառային արոտավայրերում: Բայց անցյալ տարի աշնանը, երբ նախիրը տեղափոխեցինք գյուղամերձ արոտավայրերը, սովորականի նման կաթը խիստ պակասեց: Այդ ժամանակ մեր կոլտնտեսությունը հնձեց կանաչ եգիպտացորենը և այն տվեց կովերին: Այդ օրվանից, եգիպտացորենի կանաչ մասսայով կերակրվող կովերի կաթնատվությունը բարձրացավ: Ֆերմայում վերականգնվեց կաթի այն մակարդակը, որ կար ամառային արոտի ամենալավ ամիսներին: Այս տարի մենք նորից աշնանը կովերին կերակրելու ենք կանաչ եգիպտացորենով և դա մեզ կօգնի նոր հաջողությունների հասնելու՝ կաթնատվության բարձրացման գործում, կնպաստի ստերջության վերացմանը, կովերը կլինեն գեր, իսկ մատղաշներն առողջ:

Կովերի կաթնատվության բարձրացման գործում կարևոր նշանակություն ունի նաև ժամանակին կերակրելը, ջրելը, մաքրելը, կուրծը խնամելը: Այդ բոլորը մենք կատարում ենք մեր զոոտեխնիկների կազմած ռեժիմով ու նրանց խորհրդով:

Ես աշխատանքի մեծ փորձ չունեմ, ընդամենը 5 տարի է, որ կթվորուհի եմ: Կթվո-



րուհու աշխատանքը, թեև այն դժվար է, բայց ես սիրում եմ: Դա և պատիվ է բերում ինձ և օգուտ: Մեծ պատիվ է, որ ինձ Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածու առաջադրեցին և Մոսկվա ուղարկեցին, ինչպես նաև պարգևատրեցին Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության պատվոգրով: Կատարածս աշխատանքի համար շատ լավ վարձատրվում եմ: Բավական է ասել, որ անցյալ տարի լրացուցիչ վարձատրության կարգով կոլտնտեսությունից ստացա 1,5 տոննայից ավելի կաթ, չհաշված աշխօրերի դիմաց ստացածս մթերքներն ու դրամը: Անցյալ տարի յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացա 2.100 կգ. կաթ: Շատ հավանական է, որ կաթի այդ քանակը այս տարի կավելանա 300—400 կգ.-ով: Կաշխատեմ ցուցահանդեսում մեր ուսումնասիրած առաջավոր փորձն արմատավորել կոլտնտեսությունում: Տեսածներիս մասին պատմել ընկերներիս, որ նրանք ևս հետևեն մեր երկրի գյուղատնտեսության առաջավորների օրինակին:

# ԳՈՐԾԱՐԱՆԻ ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԻ ՍԵՄԻՆԱՐ ՊԱՐԱՊՄՈՒՆՔԸ

Մ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Երևանի Ստ. Շահումյանի անվան կաշվի գործարանի ագիտկոլեկտիվը վերջերս հավաքվել էր հերթական սեմինար պարապմունքի։ Սեմինարի թեման էր «Արտադրական նույն տարածությունից երկրին տալ ավելի շատ արտադրանք»։ Զեկուցումով հանդես եկավ գործարանի գլխավոր ինժեներ ընկ. Հ. Տեր-Գրիգորյանը։

Զեկուցողը նշեց, որ չնայած վերջին տարիների ընթացքում աննախընթաց կերպով ավելացել է գործարանի արտադրանքը, սակայն մեր բնակչության հարաճուն պահանջները, ինչպես մեր երկրի բոլոր կաշեգործներին, նույնպես և իրենց պարտավորեցնում են անընդհատ ավելացնել արտադրանքի թողարկումը, երկրին տալ ավելի շատ կաշվե-



ղեն։ Խնդիրն, իհարկե, դժվար է, բայց լրովին իրագործելի,— ասում է զեկուցողը։ Դժվարությունը նրանում չէ, թե գործարանը լրիվին կապահովվի՞ արդյոք անհրաժեշտ քանակությամբ հումքով։ Այս դժվարությունը վաղուց արդեն վերացել է շնորհիվ այն բանի, որ մեր երկրի անասնաբուծության ընդհանուր հաջողությունները պայմաններ են ստեղծել թեթև արդյունաբերությունը կաշվե հումքով ապահովելու համար։ Գործարանի ռիթմիկ աշխատանքը չի կարող խախտվել հումքի վատ մատակարարման պատճառով։

Խնդիրն այն է,— ասում է գլխավոր ինժեները,— որ գործարանի կոլեկտիվը արտադրանքի թողարկումը պետք է ավելացնի ոչ թե բանվորական ուժի և մեքենաների ու սարքավորումների ավելացման հիման վրա, այլ առանց այդ բանի, այսինքն՝ պետք է արտադրական միևնույն տարածությունից զգալիորեն ավելացնի արտադրանքի թողարկումը։

Զեկուցողը կոնկրետ օրինակներով ցույց է տալիս, որ առանց հիմնական սարքավորումներն ու բանվորների թիվն ավելացնելու, ավելի շատ արտադրանք տալը կախված է առաջին հերթին աշխատանքի առա-

ջավոր մեթոդների սիստեմատիկ արմատավորումից և մեքենաներն ու սարքավորումներն անխափան աշխատեցնելուց։

Երևանի Շահումյանի անվան կաշվի գործարանը պատկանում է ռեսպուբլիկայի այն գործարանների թվին, որոնց արտադրական պրոցեսների բարելավման ու կատարելագործման մեջ խիստ կարևոր դեր են խաղում հենց գործարանի առաջավորները։ Եղել են բազմաթիվ դեպքեր, երբ առաջավոր բանվորների աշխատանքի դրական փորձը արմատավորելով արտադրության մեջ՝ մեծ չափերով բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։

Ահա գործարանի այդ մարդկանցից միայն երկուսը՝ կաշի ձգողներ Հարություն Բերբերյանը և Վալոդյա Պախոմովը։ Սրանց աշխատանքի լավագույն փորձի կիրառումը աշխատանքի արտադրողականությունը բրիգադայում բարձրացրել է 14 տոկոսով և տվել հումքի զգալի խնայողություն։

Այս երկու բանվորները կատարելագործելով իրենց աշխատանքի մեթոդները, հասել են արտադրական բարձր ցուցանիշների։ Նրանք զգալիորեն կրճատել են օպերացիաների կատարման ժամկետը, ավելացրել թողարկվող արտադրանքը, տնտեսել հումքը



և բարձրացրել են արտադրանքի որակը։ Նրանք իրենց արտադրական պլանները սիստեմատիկաբար կատարում են 120—128 տոկոսով։ Գործարանի պարտիական և պրոֆմիութենական կազմակերպությունները տեսնելով նրանց աշխատանքի մեթոդների կիրառման շահավետությունը, կազմակերպեցին հատուկ խմբակներ, որոնց մեջ ընդգրկված բանվորները սկսեցին ագիտատորների օգնությամբ ուսումնասիրել այդ առաջավոր փորձը։

Սեմինարում ելույթ ունեցող ագիտատորները ունկնդիրների հետ իրենց առաջիկա զրույցը ավելի հետաքրքիր ու նպատակասլաց դարձնելու նպատակով, պատմում էին, թե իրենք, օգտագործելով սեմինար պարապմունքի նյութերը, առաջիկայում ինչպես կանցկացնեն զրույցը՝ արտադրական նույն տարածությունից ավելի շատ արտադրանք տալու մասին։

Ագիտատորներ Ն. Մանուկյանը, Ս. Հակոբյանը և մյուսները խոսում են ագիտացիոն զրույցը տեղական օրինակներով հարըստացնելու և այն ավելի գրավիչ ու նպատակասլաց դարձնելու մասին։ Բանվորների և ինժեներա-տեխնիկական ողջ կոլեկտիվի ուշադրությունը հարկավոր է ուղղել մեքենաների ու սարքավորումների արդյու-

նավետ օգտագործման, նրանց անխափան աշխատանքի, տեխնիկական լավագույն խնամքը ապահովելու գործի վրա,— ասում էին նրանք։ Սեմինարում ագիտատորները մեծ ուշադրություն դարձրին սոցիալիստական պարտավորությունների կատարման և հատկապես այն բանի վրա, թե ինչպիսի ընթացք են ստանում բանվորների կողմից արված ռացիոնալիզատորական առաջարկությունները։

Ագիտատորները կոնկրետ օրինակներով մատնանշում էին, որ գործարանում կան բոլոր հնարավորությունները նույն արտադրական տարածությունից ավելի շատ արտադրանք տալու համար։ Արտադրանքի թողարկումն ավելացնելու հետ միասին,— ասում էին նրանք,— հարկավոր է քաղաքական-բացատրական լայն աշխատանք կազմակերպել բանվորների մեջ, որպեսզի նրանք արտադրանքի ավելացման հետ միասին, պայքար ծավալեն նաև որակի բարձրացման համար։

Սեմինարում հանգամանորեն պարզաբանվեց, թե ինչպես պետք է օգտագործել ցուցադրական ագիտացիան, արտադրական նույն տարածությունից ավելի շատ արտադրանք տալու մասին զրույցն անցկացնելիս։

---



# ՍՈՒԵԶԻ ՋՐԱՆՑՔԸ




1956 թվականի հուլիսի 26-ին նախկին «Սուեզի ջրանցքի համաշխարհային ընկերության» վարչության շենքի վրա պատմության մեջ առաջին անգամ բարձրացվեց եգիպտական պետական դրոշը։ Եգիպտական ժողովուրդը, որը երկար ժամանակ գտնվում էր գաղութային լծի տակ, ազատագրվելով, չցանկացավ, որ իր ազգային հարստությունը մնար օտարերկրյա զավթիչներին ավար։ Սուեզի ջրանցքը կառուցվել է Եգիպտոսի տերիտորիայում, Եգիպտոսի նյութական ռեսուրս-

ների հաշվին, եգիպտական գյուղացիների ձեռքով։ Սակայն ընկերության ղեկավարությունը կազմված էր օտարերկրացիներից, որոնք հաճախակի խախտում էին եգիպտական օրենքները, հաշվի չէին առնում Եգիպտոսի ազգային շահերը։ Սուեզի ջրանցքի նախկին ընկերությունը, դա մի պետություն էր պետության մեջ։ Եգիպտական կառավարությունը որոշեց ազգայնացնել իմպերիալիստական այդ ընկերությունը։ Այդ նշանակում է, որ այսուհետև Սուեզի ջրանցքը դադարեց օտարերկրյա մոնոպոլիաների սեփականությունը լինելուց և վերադարձվեց իր օրինական տիրոջը՝ եգիպտական ժողովրդին։

Սուեզի ջրանցքի նախկին ընկերության եկամուտները կազմվում էին բավականաչափ բարձր մաքսերից, որ գանձվում էր ջրանցքով տարվող բեռների յուրաքանչյուր տոննայից, և ուղևորների տեղափոխման վարձից։ Եկամուտների լրացուցիչ հոդված էր հանդիսանում նավերին վաճառվող նույնիսկ խմելու ջուրը։ Այդ ընկերությունը յուրաքանչյուր տարի ստանում էր 35 միլիոն ֆունտ եկամուտ (եգիպտական 1 ֆունտը հավասար է 11 ռուբլի 52 կոպեկի), որից միայն մեկ միլիոնն էր հասնում Եգիպտոսին։



Այժմ, երբ իրականացված է ջրանցքի ընկերության ազգայնացումը, նրա շահագործումից ստացվող եկամուտները, ինչպես հայտարարեց Եգիպտոսի պրեզիդենտ Նասերը, կծախսվեն Եգիպտոսի տնտեսական զարգացման և երկրի ինդուստրացման ծրագրի իրականացման վրա։

* * *

Սուեզի ջրանցքը հանդիսանում է աշխարհի խոշորագույն ջրանցքներից մեկը։ Բեռնաշրջանառությամբ նա աշխարհում գրավում է առաջին տեղը։ Գտնվելով Մերձավոր Արևելքի կենտրոնական մասում, և Միջերկրական ծովը միացնելով Կարմիր ծովին, նա կարևորագույն կոմունիկացիա է հանդիսանում Ատլանտյան, Հնդկական և Խաղաղ օվկիանոսների միջև։ Սուեզի ջրանցքի շնորհիվ նախկին այն ծովային ուղին, որը Աֆրիկան շրջանցելով, Եվրոպայից գնում էր դեպի Հնդկական և Խաղաղ օվկիանոսների երկրները, զգալիորեն կրճատվեց։ Սուեզի ջրանցքը ունի ինչպես տնտեսական, այնպես էլ քաղաքական և ռազմա-ստրատեգիական խոշոր նշանակություն։

Միջերկրական և Կարմիր ծովերը միացնե-

լու գաղափարը եգիպտացիներին գրավում էր դեռևս հին դարերում: Նրանք նույնիսկ ջրանցք փորելու փորձեր կատարեցին: Ավելի քան երկու հազար տարի առաջ Նեխաո Փարավոնի օրոք կառուցվեց մի նավարկելի ջրանցք, որը Նեղոսը միացնում էր Կարմիր ծովին: Սակայն մեր թվագրության ութերորդ դարում այդ ջրանցքը դիտավորյալ կերպով լցվեց Եգիպտոսը նվաճողների կողմից:

Սուեզի պարանոցում ջրանցք փորելու փորձերը ուժեղ թափով վերսկսվեցին առանձնապես կապիտալիզմի զարգացման դարաշրջանում, երբ եվրոպական պետությունները սկսեցին գաղութներ զավթել: Այդ ժամանակ մետրոպոլիաների և գաղութների միջև բուռն կերպով աճեց նավագնացությունը և առևտուրը: Այդ հանգամանքն իր հերթին ուժեղացրեց կարևորագույն ծովային կոմունիկացիաները տիրապետելու համար կապիտալիստների միջև առաջացած պայքարը:

Միջերկրական և Կարմիր ծովերն անմիջականորեն իրար միացնող ջրանցքի շինարարությունն իրականացնելու առաջին փորձը նախաձեռնվել է Նապոլեոնի կողմից, 1798—1799 թվականների նրա եգիպտական արշավանքի ժամանակ: Բայց ֆրանսիական նվաճողների մտադրությունները չիրականացվե-



ցին Անգլիայի դիմադրության և Նապոլեոնի պարտության պատճառով: Այդ փորձը ֆրանսիական կապիտալիստները վերսկսեցին անցյալ դարի վաթսունական թվականներին: Վերջապես, ամեն տեսակի քաղաքական ավանտյուրաներից, կաշառումներից ու ինտրիգներից հետո, 1859 թվականին Եգիպտոսի վզին փաթաթվեց կոնցեսիաների վերաբերյալ ստրկացուցիչ համաձայնագիրը: Այդ համաձայնագրով սահմանվեց կոնցեսիայի գործունեության բացահայտ ստրկացուցիչ ժամկետ՝ (ջրանցքի բացումից սկսած՝ 99 տարի, այսինքն՝ 1869 թվականից մինչև 1968 թվականը):

Սուեզի ջրանցքի շինարարությունը տևեց ավելի քան տասը տարի: Տաժանակիր աշխատանք կատարելու համար Եգիպտոսի զանազան ծայրերից դեպի Սուեզի պարանոց էին քշում-բերում տասնյակ հազար ճորտեր: Աշխատանքները կատարվում էին բացառիկ ծանր պայմաններում: Եգիպտական գյուղացի-ֆելահների ձեռքով փորվել և դուրս է բերվել 74 միլիոն խորանարդ մետր հող: Բավական է ասել, որ սովից, համաճարակային հիվանդություններից և հալումաշ անող աշխատանքներից զոհվել է 120 հազար եգիպտացի:

Սուեզի ջրանցքի կառուցումը դատարկեց եգիպտական գանձարանը։ Ընկերության տերերը Եգիպտոսին ստիպեցին վճարել նույնիսկ ջրանցքի բացմանը (1869 թվականի նոյեմբերի 17-ին) նվիրված տոնահանդեսի ծախսերը։

Սուեզի ջրանցքի ընդհանուր երկարությունը կազմում է 173 կիլոմետր. մակերեսային լայնությունը՝ 120—150 մետր, հատակային լայնությունը՝ 45—60 մետր, խորությունը՝ 12—13 մետր։

Ջրանցքով անցնել կարող են խոշոր ռազմանավերը, այդ թվում նաև գծանավերը։ Ժամանակակից նավերը ջրանցքով կարող են անցնել 11—12 ժամում։

Սուեզի ջրանցքի գլխավոր նավահանգիստներն են՝ Պորտ-Սաիդը (մոտ 200 հազար բնակչությամբ) և Սուեզը (100 հազարից ավելի բնակչությամբ)։

Սուեզի ջրանցքը կառուցելուն պես Ֆրանսիայի և Անգլիայի միջև սուր պայքար սկսվեց ջրանցքի գոտում գերակշռող ազդեցություն ձեռք բերելու համար։ 1875 թվականին Անգլիան, օգտվելով Եգիպտոսի ֆինանսական դժվարություններից, չնչին գնով ձեռք բերեց ընկերության ակցիաների եգիպտական բաժինը։ Այդ «գնումը» Անգլիային թույլ



տվեց զավթել Սուեզի ջրանցքի համաշխարհային ընկերության վերահսկողությունը, ինչպես նաև նախապատրաստեց Սուեզի ջրանցքի գոտու անգլիական օկուպացիան (1882 թ.) և Եգիպտոսի վրա հետագա պրոտեկտորատի հաստատումը (1883 թ.)։ 1948 թվականին ակցիաների մի մասին սեփականատեր դարձան Ամերիկայի Միացյալ Նահանգները։

Եգիպտական ժողովուրդը շատ տասնամյակների ընթացքում համառ, անձնուրաց պայքար է մղել իր ազգային անկախության համար։ Այդ պայքարում նա քայլ առ քայլ ձգտել է հասնել իր օրինական իրավունքների իրականացմանը։ Եգիպտական ժողովրդի աչքի ընկնող հաղթանակներից մեկը՝ դա Եգիպտոսի կառավարության կողմից Սուեզի ջրանցքի համաշխարհային ընկերության ազգայնացումն է։

Պաշտոնական տվյալներից երևում է, որ տասը տարում (1946—1955 թթ.) Սուեզի ջրանցքով անցել են 106 հազար նավ, որոնց կեսից ավելին եղել են նավթատար նավեր՝ տանկերներ։ Հարավից հյուսիս գնացող բեռների հոսքը 1955 թվականին կազմել է 87 միլիոն տոննա։

Սակայն, միանգամայն պարզ է, որ ա-

*բեմտյան երկրների ռեակցիոն շրջանների մեքենայությունները ընդդեմ Եգիպտոսի չեն կարող արդարացի վայրույթ չառաջացնել։ Այդ մեքենայությունները պատշաճ հակահարված կստանան ոչ միայն Եգիպտոսի կողմից, այլև աշխարհի մյուս երկրների ժողովուրդների կողմից, որոնք հաջողություններ և բարգավաճում են ցանկանում երիտասարդ եգիպտական ռեսպուբլիկային, որը հաստատակամորեն ընթանում է դեպի իր ազգային լիակատար անկախություն։*

*Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ*



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. ԱՌԱՆՑ ԿՈՐՍՏԻ ՀԱՎԱՔԵՆՔ ՀԱՑԱՀԱՏԻԿԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲԵՐՔԸ*

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը Պարտիայի XX համագումարին, *հացահատիկային տնտեսությունը գյուղատնտեսական ամբողջ արտադրության հիմքն է, էջ 81—88, Հայպետհրատ, 1956։*

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956 թվականի առաջին կիսամյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին, *մաս 3-րդ՝ գյուղատնտեսություն, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի օգոստոսի 2-ի համարում։*

Փակել բերքի կորստի բոլոր ուղիները, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի օգոստոսի 3-ի առաջնորդողը։*

Բրյանսկի մարզի կոլտնտեսականների, կոլտնտեսությունների, ՄՏԿ-ների և սովխոզների աշխատողների, գյուղատնտեսության մասնագետների *ԴԻՄՈՒՄԸ, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի օգոստոսի 9-ի համարում։*

## 2. ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐՈՒՄ ԼԱՅՆՈՐԵՆ ԱՐՄԱՏԱՎՈՐԵՆՔ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԸ

Գրականություն

Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի XX համագումարի բանաձևը՝ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման վերաբերյալ, *էջ 62—67, Հայպետհրատ, 1956։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Ճառ Լուժնիկի Կենտրոնական ստադիոնում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի օգոստոսի 1-ի համարում։*

Լայն ճանապարհ բերքահավաքի առաջավոր եղանակին, *նյութեր հացահատիկային կուլտուրաների անջատ բերքահավաքի մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի օգոստոսի 3-ի համարում։*

Ա. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ— *Հացահատիկային կուլտուրաների անջատ բերքահավաքը, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 6-րդ համարում։*

## 3. ԼՐԻՎ ԿԱՐՈՂՈՒԹՅԱՄԲ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵՔԵՆԱՆԵՐՆ ՈՒ ԳՈՐԾԻՔՆԵՐԸ

Գրականություն

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Զեկուցում ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվների մասին, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *էջ 60—64, Հայպետհրատ, 1956։*

Կոմբայնավար Կարապետ Գևորգյանը, հոդված



տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի օգոստոսի 5-ի համարում:

Ղազախստանի գյուղատնտեսության աշխատողների խորհրդակցությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հուլիսի 28-ի համարում։*

Երկրի լավագույն ՄՏ կայանների հիանալի օրինակը, *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 7-րդ համարում։*

## 4. ԲԱՐԵԼԱՎԵՆՔ ՋՐՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Գրականություն

Օրենք Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի գյուղատնտեսական ջրօգտագործման մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի հուլիսի 31-ի համարում։*

Ջրային տնտեսության զարգացման և ջրօգտագործումը բարելավելու համար, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի օգոստոսի 7-ի առաջնորդողը։*

## 5. ՊԱՅՔԱՐԵՆՔ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԱՐՁՐ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Գրականություն

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, *հատոր 27, էջ 306—310, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման և արտադրության էկոնոմիկայի բարելավման համար, *ՍՍՌՄ ժողովր-*



*դական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿՊ XX համագումարին տրված զեկուցումից, էջ 75—79, Հայպետհրատ, 1956։*

Լայնորեն արմատավորել առաջավոր փորձը, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի հուլիսի 25-ի առաջնորդողը։*

## 6. ԼԱՎ ԽՆԱՄՔՈՎ ԲԱՐՁՐԱՑՆԵՆՔ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ՄԹԵՐԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Անասնաբուծության հետագա վերելքի խնդիրները, ՍՄԿՊ XX համագումարին *տված զեկուցումից, էջ 88—94, Հայպետհրատ, 1956։*

Ավելի շատ անասնակեր կուտակելու համար, *հոդված տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 6-րդ համարում։*

## 7. ՏԱՆԿԻՍՏՆԵՐԻ ՕՐԸ

## 8. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՇՏՊԱՆՈՒՄ Է ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆԸ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Ճառ Լուժնիկի Կենտրոնական ստադիոնում, տպագրված *«Ս. Հ.»-ի 1956 թվականի օգոստոսի 1-ի համարում։*

Սովետական Կառավարության հայտարարությունը Սուեզի ջրանցքի հարցի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի օգոստոսի 10-ի համարում։*

---

## СОДЕРЖАНИЕ

Стр.

### МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД



### ИЗ ОПЫТА ПЕРЕДОВИКОВ



### ИЗ ОПЫТА АГИТАЦИОННОЙ РАБОТЫ



### СПРАВОЧНЫЙ ОТДЕЛ



### В ПОМОЩЬ АГИТАТОРАМ





Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ